## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78։


## СОДЕРЖАНИЕ




**Адрес редакции**—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.





Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 13 ՀՈՒԼԻՍ 1963

ՀԿԿ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

*Լույս է տեսնում ամիսը երկու անգամ*


ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

# ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂՆԵՐԻ ՊԱՐՏԻԱՆ

## ՌՍԴԲՊ II համագումարի 60-ամյակի առթիվ

*Երկար և փառապանծ ուղի է անցել մեր երկրի կոմունիստական պարտիան։ Ահա արդեն 60 տարի է, ինչ նա նվիրված ծառայում է ժողովրդի շահերին, անձնվիրաբար պայքարում կոմունիզմի իդեալների համար։ Պրոլետարական ռևոլյուցիոներ-մարքսիստների ոչ մեծ ջոկատից, որը XIX դարի վերջերին հերոսական ճակատամարտի ելավ ցարական ինքնակալության դեմ, պարտիան հասավ պատմության գագաթներին, կանգնեց արդի դարաշրջանի ռևոլյուցիոն իրադարձությունների կիզակետում, դարձավ աշխարհը վերափոխող ու նորոգող ստեղծարար մեծ ուժ։*

*Կոմունիստական պարտիայի հարուստ պատմության մեջ կա հատկապես նշանավոր մի տարեթիվ, որից սկսվում է պարտիայի տարեգրությունը։ Դա 1903 թվականի հուլիսի 30-ն է, երբ բացվեց ՌՍԴԲՊ երկրորդ համագումարը։ Այդ հեռավոր օրը Բելգիայի մայրաքաղաք Բրյուսելում հավաքվեց ռուս ռևոլյուցիոներների մի փոքր խումբ։ Նրանք 43-ն էին։ Պատգամավորների մեծ մասը ժամանել էր անմիջականորեն Ռուսաստանից՝ նրանց ուղարկել էին Պետերբուրգի, Մոսկվայի, Խարկովի, Կիևի, Օդեսայի, Տուլայի, Նիկոլաևի, Եկատերինոսլավի, Սարատովի, Ուֆայի, Թիֆլիսի, Բաքվի, Բաթումի, Սիբիրի, Ղրիմի և այլ վայրերի սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունները։ Պատգամավորները քիչ ջանքեր չգործադրեցին ոստիկանության զգոնությունը թմրեցնելու և արտասահման անցնելու համար։ Բայց «դեմոկրատական» Բելգիայում և ռուս ռևոլյուցիոներներին հանգիստ չտվեցին։ Նրանք այնուհետև հարկադրված եղան փո-*

խադրվել Լոնդոն, որտեղ իր աշխատանքն ավարտեց համագումարը։

Այդ պատմական իրադարձության մասնակիցները պատմում են, թե իրենք ինչպիսի բերկրալի հուզմունքով ու մեծ անհամբերությամբ դիմավորեցին համագումարը։ «Մենք՝ տեղերից ժամանածներս,— վերհիշել է Մ. Լյադովը,— իսկույն զգացինք, որ մեր պարտիայի պատմության մեջ ինչ-որ շատ մեծ բան է կատարվում»։

Իրականում հենց այդպես էր։ Համագումարը ստեղծեց ամուր հիմք, որը բոլշևիկների պարտիային թույլ տվեց արիաբար դիմանալու բոլոր փորձություններին և ժողովրդի ռևոլյուցիոն եռանդն ուղղելու իշխանության գրավման ու նոր հասարակարգի կառուցման նպատակին։

1

Մեր դարի սկզբին Վ. Ի. Լենինը մարգարեաբար հայտարարեց. «Տվե՛ք մեզ ռևոլյուցիոներների կազմակերպություն— և մենք շուռ կտանք Ռուսաստանը» (Երկեր, հ. 5, էջ 622)։ Բայց բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պարտիայի ստեղծումը ինքնակալական ճնշման և քաղաքական կամայականության երկրում բացառիկ դժվարին գործ էր։ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական հինգ խոշորագույն կազմակերպությունների ներկայացուցիչների առաջին համագումարը, որը տեղի ունեցավ 1898 թվականի մարտին, հռչակեց Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի ստեղծումը։ Սակայն պարտիայի կենտրոնական հիմնարկները, որոնք ստեղծվել էին համագումարում, շուտով ջախջախվեցին ցարիզմի կողմից, և տեղական կազմակերպություններն առաջվա պես շարունակում էին աշխատել միմյանցից կտրված, յուրաքանչյուրը իր «ռիսկով», չպահպանելով ծրագրային ու տակտիկական որևէ միասնական սկզբունք։ Որպես միասնական կենտրոնացված կազմակերպություն պարտիան փաստորեն գոյություն չուներ։

Ավելին, առաջին համագումարից հետո սոցիալ-դեմոկրատիայի շարքերում ուժեղացան գաղափարական տատանումները և ըսկսեց ավելի սուր արտահայտվել կազմակերպական մասնատվածությունը։ Գլուխ բարձրացրեց «էկոնոմիզմը»՝ միջազգային օպորտունիզմի ռուսական տարատեսակը։ Գերմանական ռևիզիոնիստների պարագլուխ Բեռնշտայնի երկրպագուները՝ «էկոնոմիստները» գովերգում էին բանվորական շարժման տարերայնությունը, ժխտում էին նրա մեջ սոցիալիստական գիտակցություն մտցնելու անհրաժեշտությունը, ձգտում էին պրոլետարիատի խնդիրները սահմանափակել սոսկ տնտեսական պայքարի շրջանակներով։

Պարզ է, որ Ռուսաստանի բանվոր դասակարգն այդ ճանապարհով երբեք չէր կարող բարձրանալ ու հասնել իր համաշխարհային-պատմական խնդիրների ըմբռնմանը և դառնալ ժողովրդի իսկական առաջնորդ։ Մինչդեռ երկրում իրադարձությունների ամբողջ ընթացքը, ռևոլյուցիոն փոթորկի մոտեցումը հրամայաբար պահանջում էին Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիայի ցաքուցրիվ բջիջները միավորել մարքսիստական միասնական ռևոլյուցիոն պարտիայի մեջ, որն ընդունակ լիներ բանվոր դասակարգին ու գյուղացիությանը վճռական մարտի տանելու ցարական ինքնակալության և կապիտալիզմի դեմ։

Բայց այդ խնդիրն ինչպե՞ս լուծել ինքնակալական դեսպոտիզմի պայմաններում։ Լենինը, գտնվելով Սիբիրի Շուշենսկոյե գյուղի աքսորավայրում, անդուլ կերպով մտածում էր այդ հարցի մասին։ Նրա մեջ հենց այստեղ հասունացավ համառուսական անլեգալ քաղաքական թերթի օգնությամբ պարտիա ստեղծելու պլանը, թերթ, որը կարողանար այն ժամանակվա բարդ պայմաններում գաղափարապես ու կազմակերպչորեն համախմբել սոցիալ-դեմոկրատիան։

Այդպիսի թերթ՝ «Իսկրա»-ն, Վլադիմիր Իլյիչը արտասահմանում հիմնադրեց 1900 թվականի վերջին։ Նրա ղեկավարությամբ թերթը կատարեց բացառիկ մեծ աշխատանք՝ ջախջախիչ հարվածներ հասցրեց ռուսական օպորտունիզմին, ճակատամարտի բռնվեց միջազգային ռևիզիոնիզմի հետ, միավորեց ցաքուցրիվ սոցիալ-դեմոկրատական ուժերը, մշակեց պարտիայի ծրագրի և կանոնադրության նախագիծը։ Այսպիսով, «Իսկրա»-ն գաղափարապես ու կազմակերպչորեն նախապատրաստեց ՌՍԴԲՊ երկրորդ համագումարը, նոր տիպի պարտիայի ստեղծումը։

2

«...Մեծագույն սխալ կլիներ... մոռանալ,— գրել է Լենինը 1902 թվականին,— որ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական պարտիայի համագումարից այժմ բոլորը սպասում են այնպիսի որոշումներ, որոնք լինեն արդիականության բոլոր ռևոլյուցիոն խնդիրների բարձրության վրա...» (Երկեր, հ. 6, էջ 114)։ Բայց համագումարի բոլոր պատգամավորներին չէ, որ ձեռնտու էին այդ որոշումները։ Դրանք ծնվում էին թեժ վիճաբանությունների, սուր ընդհարումների, կատաղի պայքարի մեջ։ Համագումարի արձանագրությունները ապշեցնում են կրքերի հսկայական սրությամբ, հակառակ կարծիքների կատաղի պայքարով։

Բանն այն է, որ համագումարում ներկայացված էին այն ժամանակ սոցիալ-դեմոկրատիայի շարքերում գոյություն ունեցող գաղափարական տարբեր հոսանքներ։ Հետևողական ռևոլյուցիոներների, լենինյան իսկրայականների կողքին պատգամավորների թվում կային, ինչպես Վլադիմիր Իլյիչն է ասել, նաև օպորտունիստներ՝ «մեծ» ու «փոքր»։ Իսկրայականները կազմում էին մեծամասնություն՝ ունեին 33 ձայն,

նրանց բացահայտ հակառակորդներն ունեին 8 ձայն, մնացած 10 ձայները պատկանում էին ցենտրիստական տարրերին, կամ «ճահճին»։ Բայց շուտով իսկրայական պատգամավորների շարքերում նկատվեցին տատանվողներ, անկայուն մարդիկ։

Համագումարի ռևոլյուցիոն թևի ընդհարումն օպորտունիստական տարրերի հետ ակնառու կերպով երևաց արդեն ՌՍԴԲՊ՝ «Իսկրա»-ի նախապատրաստած և Լենինի ու Պլեխանովի կողմից գրված ծրագրի նախագծի քննարկման ժամանակ։ Օպորտունիստական թևի պարագլուխներն առանձնահատուկ համառությամբ գնդակոծեցին ծրագրի կենտրոնական կետը՝ պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու պահանջը։ Եվ նրանք ունեին մեկ պատճառաբանություն՝ արևմուտքի սոցիալ-դեմոկրատական պարտիաների ծրագրերում այդպիսի պահանջ չկա։

Հակառակ օպորտունիստական այդ տեսակետին, Լենինը և նրա համախոհներն ընդգծում էին, որ պրոլետարիատի դիկտատուրայի հարցը մարքսիստական տեսության ու քաղաքականության արմատական հարցն է։ Նրանք հասան այն բանին, որ ընդունվեց ծրագրի իսկրայական նախագիծը, որն իսկապես գըտնըվում էր նոր դարաշրջանի՝ բուրժուազիայի դեմ պրոլետարիատի վճռական մարտերի դարաշրջանի ռևոլյուցիոն խնդիրների բարձրության վրա։

«Պրոլետարիատի դիկտատուրայի հարցը,— հետագայում գրել է Լենինը,— այդ ծրագրում դրված է պարզ ու որոշակի, ընդ որում դրված է հենց Բեռնշտայնի դեմ, օպորտունիզմի դեմ պայքարելու կապակցությամբ» (Երկեր, հ. 31, էջ 421 422)։ Ծրագիրը մարքսիզմի ամուր հիմքի վրա սահմանեց սոցիալ-դեմոկրատիայի հետևողական ռևոլյուցիոն գիծը ցարիզմի ու կապիտալիզմի դեմ մղվելիք մարտերում և պարտիայի մերձավորագույն խնդիրների հետ մեկտեղ նշեց նրա հիմնական նպատակը՝ ոչնչացնել կապիտալիզմը և ապահովել քաղաքական իշխանության գրավումը բանվոր դասակարգի կողմից։

Մեր անցած ուղու բարձունքից հատկապես հստակորեն է երևում պրոլետարիատի դիկտատուրայի հսկայական դերը սովետական պետության ճակատագիրը որոշելու գործում։ Դիկտատուրան մեր ժողովրդին թույլ տվեց կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հակահարված տալ թշնամիների բոլոր գրոհներին, պաշտպանել Հոկտեմբերի նվաճումները , ապահովել սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակը։ Դրանով իսկ պրոլետարիատի դիկտատուրան ՍՍՌՄ-ում կատարեց իր պատմական միսիան, և սովետական պետությունը արդի փուլում դարձել է համաժողովրդական պետություն։

Պայքարը համագումարում ավելի սրվեց, երբ բանը հասավ պարտիայի կանոնադրության լենինյան նախագծի քննարկմանը։ Խոսքը վերաբերում էր կազ-



մակերպական այն սկզբունքներին, որոնք պետք է դրվեին պարտիայի կառուցման հիմքում։ Այստեղ ընդհարվեցին երկու հակադիր գծեր. լենինյան ռևոլյուցիոն և մարտովյան օպորտունիստական գծերը։ Տարաձայնությունների էությունը առավել լրիվ կերպով դրսևորվեց կանոնադրության առաջին կետի՝ պարտիայի անդամությանը վերաբերող կետի քննարկման ժամանակ։ Լենինի նախագծի այդ կետում ասված էր. «ՌՍԴԲՊ անդամ է համարվում ամեն ոք, ով ընդունում է նրա ծրագիրը և պարտիային աջակցում է ինչպես նյութական միջոցներով, այնպես էլ պարտիական կազմակերպություններից մեկն ու մեկին անձամբ մասնակցելով»։ Մարտովն առաջարկեց առաջին կետի իր ձևակերպումը, որը ՌՍԴԲՊ անդամից չէր պահանջում անձամբ մասնակցել պարտիական կազմակերպություններից մեկն ու մեկին, այսինքն՝ հնարավորություն էր տալիս պարտիայի մեջ մտցնելու բոլոր ցանկացողներին և դռները լայնորեն բացում էր օպորտունիստական, մանր բուրժուական տարրերի առջև։

Երբ մենք այժմ, երկար տարիներ հետո, նորից անդրադառնում ենք այդ վեճերին, ապա առանձնահատուկ պարզությամբ տեսնում ենք, թե դրանք ինչպիսի խորագույն սկզբունքային իմաստ են ունեցել։ Խոսքը վերաբերել է այն բանին, թե Ռուսաստանում ինչպիսի պարտիա է ստեղծվելու՝ ամորֆային, անորոշ, անկայուն, պատահական տարրերով լցված, թե մարտական, ամուր կոփված, լավ կազմակերպված, կարգապահ պարտիա, հին աշխարհի ուժերի դեմ դաժան մարտեր մղելու պատրաստ պարտիա։

Մարտովի կողմնակիցները ցանկանում էին սովորական ռեֆորմիստական պարտիա ստեղծել երկրորդ ինտերնացիոնալի ծանոթ օրինակներով։ Իսկ Լենինը, ընդհակառակը, մերժում էր այդ օրինակները և պայքարում էր նոր տիպի պարտիայի, օպորտունիզմի նկատմամբ անհաշտվողական և բանվոր դասակարգին ու նրա դաշնակիցներին հասարակության սոցիալիստական վերափոխման համար մեծ պայքարի տանելու ընդունակ պարտիայի համար։

Հայտնի է, որ Մարտովին հաջողվեց անկայուն իսկրայականների՝ և բացահայտ օպորտունիստների օգնությամբ համագումարում անցկացնել իր ձևակերպումը։ Սակայն հետագայում ինքը՝ Մարտովը խոստովանեց, որ այդ փաստի նշանակությունը զերոյի հավասարվեց նրանով, որ կանոնադրության մյուս կետերը ընդունվեցին լենինյան խմբագրությամբ։ Կայուն իսկրայականները պաշտպանեցին լենինյան կանոնադրության մյուս սկզբունքային դրույթները, որոնք ապահովում էին պարտիայի կառուցումը խիստ կենտրոնացված սկզբունքներով, որ այնքա՜ն անհրաժեշտ էին ընդհատակյա պայքարի դաժան պայմաններում։

Լենինյաններն իրենց սկզբունքային հաղթանակն ամրապնդեցին պարտիայի կենտրոնական օրգանների ձևավորման ժամանակ։ Կենտրոնական օրգանի՝ պարտիայի թերթի խմբագրության և Կենտրոնական կոմիտեի ընտրությունների ժամանակ մեծամասնություն ձեռք բերեցին հետևողական իսկրայականները Վլադիմիր Իլյիչ Լենինի գլխավորությամբ։ Այդպես տեղի ունեցավ ՌՍԴԲՊ-ի պատմական պառակտումը բոլշևիկների և մենշևիկների, որոնք կազմեցին երկու ինքնուրույն պարտիաներ՝ իսկական պրոլետարական, ռևոլյուցիոն, բոլշևիկյան, և մանր բուրժուական, համաձայնողական, մենշևիկյան։ Բոլշևիկներն իրենց ձեռքը վերցրին Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատիայի ռևոլյուցիոն դրոշը։

## 3

ՌՍԴԲՊ երկրորդ համագումարը արմատական շրջադարձ էր նշանակում ոչ միայն Ռուսաստանի, այլև միջազգային ռևոլյուցիոն շարժման մեջ։ Բոլշևիզմի ստեղծումով պատմական ասպարեզ դուրս եկավ նոր տիպի պարտիա։ Ստեղծված լինելով մարքսիզմի ամենաամուր տեսական բազայի վրա, նա իր մեջ ընդգրկեց այն ամեն լավը, ինչ տվել է Ռուսաստանի և Արևմուտքի ռևոլյուցիոն շարժումը։ Դա այնպիսի պարտիա էր, որի գաղափարական ու կազմակերպական սկզբունքները, որ մշակել էր Լենինը, առավել լրիվ կերպով էին համապատասխանում ճնշման շղթաներից, կապիտալիստական ստրկությունից աշխատավոր մարդկությանն ազատագրելու համար պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարի հասունացած խնդիրներին։

Պատմությունը պարտիաներ շատ գիտե։ Բայց նրանցից ոչ մեկը ժողովրդական մասսաների մեջ չի ունեցել այնպիսի խոր արմատներ, չի իրականացրել այնքան հերոսական սխրանքներ և այնպիսի ապշեցուցիչ հաջողությունների չի հասել հասարակության վերափոխության գործում, ինչպես բոլշևիկների, Լենինի պարտիան։ Նա վճռական դեր կատարեց մեր հայրենիքի բախտը որոշելու, սոցիալիզմի հաղթանակի և մեր ժողովրդի համար դեպի կոմունիզմ լայն ուղիներ հարթելու գործում։

Բոլշևիկներն ընթացել են քարքարոտ ու դժվարին ճանապարհով։ Նրանց նետել են բանտերը, ուղարկել Սիբիր, կախաղան հանել։ Բայց լենինյանները չեն ընկճվել։ Բոլշևիկներին ոգևորել են ազատագրական մեծ գաղափարները։ «Զարժեր ապրել,— բանտային իր օրագրի մեջ նշել է Ֆ. Ձերժինսկին,— եթե մարդկությունը չլուսավորվեր սոցիալիզմի աստղով, ապագայի աստղով»։ Այդ ապագայի համար մղվող պայքարում առնականացել են պրոլետարական ռևոլյուցիոներները, աճել և ամրապնդվել է պարտիայի՝ որպես ռևոլյուցիոն շարժման գլխավոր շտաբի հեղինակությունը։ Եվ երբ 1917 թվականին սովետների համառուսաստանյան առաջին համագումարում Ծերեթելին հայտարարեց, թե Ռուսաստանում չկա այնպիսի պարտիա, որը կարողանար միայնակ իր վրա վերցնել պատասխանատվությունը երկրի ճակատագրի համար, Լենինը ոգևորված բացականչեց.

— Կա՛ այդպիսի պարտիա։

Այո՛, միայն լենինյան պարտիան կարողացավ գլխավորել տասնյոթ թվականի ռևոլյուցիոն հեղեղը, երկիրը դուրս բերել պատերազմի բոցերից, այն փրկել ազգային աղետից և կանգնեցնել սոցիալիզմի կառուցման ուղու վրա։ Կենսագործելով ՌՍԴԲՊ երկրորդ համագումարի ընդունած ծրագիրը, բոլշևիկյան պարտիան Ռուսաստանի բանվոր դասակարգին, բոլոր աշխատավորներին գրոհի տարավ կապիտալիզմի դեմ։ Պատմության մեջ առաջին անգամ երկրագնդի մեկ վեցերորդ մասում հաղթանակեց նոր հասարակարգը, որն աշխարհում դրեց անդասակարգ հասարակարգի սկիզբը։

Մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո պարտիայի առջև ծառացավ բացառիկ բարդ խնդիր՝ նոր սկզբունքներով կազմակերպել երկրի էկոնոմիկան, գործնականորեն իրականացնել սոցիալիզմի և կոմունիզմի վերաբերյալ բազմադարյան երազանքը։ Օգտագործելով լենինյան համեմատությունը, կարելի է ասել, որ առաջ, սոցիալ-տնտեսական մեկ ֆորմացիայից մյուսին անցնելու դեպքում, ժողովուրդներն ունեցել են արդեն փորձված անձնակազմ, նախապատրաստված ճանապարհ, արդեն ստուգված մեխանիզմներ։ «Իսկ այստեղ ո՛չ անձնակազմ կա, ո՛չ ճանապարհ, ընդհանրապես ոչինչ, որ առաջուց փորձարկված լիներ» (Երկեր, հ. 33, էջ 235)։

Գործը բարդանում էր նրանով, որ Ռուսաստանը տնտեսապես հետամնաց երկիր էր, իսկ իմպերիալիստական ու քաղաքացիական պատերազմներն էլ ուժեղ քայքայեցին նրա ժողովրդական տնտեսությունը։ Ամեն գույնի թերահավատներն ու կապիտուլյանտները կռկռում էին, թե սովետական ժողովուրդը չի կարողանա հաղթահարել երկրի տեխնիկական հետամնացությունը և ստեղծել սոցիալիստական հասարակարգ։ Այդ անասելի բարդ պայմաններում պարտիան չտատանվեց ու կանգնեց իր պատմական կոչման բարձրության վրա։

Մեծ Լենինը մշակեց ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման գիտականորեն հիմնավորված պլանը, որի կարևորագույն օղակներն էին երկրի ինդուստրացումը և գյուղացիության կոոպերացումը, կուլտուրական հեղափոխության իրականացումը։ Լենինյան պլանը բանվոր դասակարգին և աշխատավոր գյուղացիությանը ոգեշնչեց հերոսական սխրագործությունների՝ երկրի հետամնացությունը հաղթահարելու, կապիտալիզմի դեմ սոցիալիզմի հաղթանակն ապահովելու համար։

Հայրենիքի անծայրածիր տարածություններում ծավալվեց

վիթխարի շինարարություն: Սոցիալիզմ կառուցողների փառքը տարածվեց աշխարհով մեկ:

Պարտիան սովետական ժողովրդին ոտքի հանեց կենսագործելու լենինյան կանխագծումները և ոգևորեց սոցիալիստական ամենախոր վերափոխումների: Պարտիան առանց տատանվելու առաջ էր ընթանում, խիզախաբար ետ մղելով թշնամիների գրոհները և ջախջախելով օպորտունիստների ու բոլոր նրանց դիմադրությունը, ովքեր խորհուրդ էին տալիս առաջ ընթանալ «դանդաղ քայլով, երկչոտ գիգզագով»: Մեր պարտիան Պրոմեթեոսի նման անշեջ հուր բերեց երկրագնդի բոլոր մարդկանց: Պարտիայի երկաթե կայունության, իմաստունության, մասսաների ստեղծագործական ուժերի նկատմամբ նրա անսասան հավատի շնորհիվ մարդկությունը ստացավ ռեալ գոյություն ունեցող սոցիալիստական հասարակարգ:

Հաստատ քայլերով ընթանալով լենինյան ուղիով, սովետական ժողովուրդը ստեղծեց հզոր, ծաղկող սոցիալիստական տերություն, որը կարճ ժամանակում կատարեց իսկապես հեքիաթային ցատկ՝ կանթեղից մինչև ատոմային էլեկտրակայաններ, արորից մինչև տրակտոր, ռուսաստանյան ծանրակառքից մինչև տիեզերանավեր: Բավական է ասել, որ ներկայումս Սովետական Միությունում ութ օրում թողարկվում է նույնքան արտադրանք, որքան ցարական Ռուսաստանի ամբողջ արդյունաբերությունն արտադրել է մի ամբողջ տարում:

Աշխարհի ոչ մի երկիր ներկայումս չունի այնքան հաստոց ու մեքենա, որքան ՍՍՌՄ-ը: Եթե 1913 թվականին ցարական Ռուսաստանը թողարկում էր ութ անգամ պակաս արտադրանք, քան ԱՄՆ-ը, ապա այժմ Սովետական Միության արդյունաբերական արտադրանքը կազմում է ամերիկյան արդյունաբերական արտադրանքի մոտ 63 տոկոսը: Հեռու չէ այն ժամանակը, երբ մեր երկիրը կդառնա աշխարհի առաջին արդյունաբերական տերությունը:

Սովետական պետության պատմության մեջ կարևորագույն տեղ է գրավում վերջին տասնամյակը: Այդ տարիներին պարտիան, վճռականապես դատապարտելով Ստալինի անձի պաշտամունքը և մեր կյանքի բոլոր բնագավառներում վերականգնելով լենինյան նորմաները, շեշտակի շրջադարձ կատարեց դեպի կոմունիստական շինարարության հրատապ պրոբլեմները: Պարտիայի և նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի այս վերջին տարիների գործունեության համար, հատկապես բնորոշ են ստեղծագործության ոգին, կառավարման ավելի կատարյալ տնտեսական շինարարության աճած մակարդակին համապատասխանող ձևերի որոնումները: Պարտիական ու սովետական օրգանների վերակառուցումը ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան պլենումի որոշումներին համապատասխան, այդ օրգաններն ավելի



մոտեցրեց արտադրությանը, մեծացրեց պարտիայի՝ որպես աշխատավորների առաջնորդի և կազմակերպչի դերը: Իր համարձակ ռևոլյուցիոն միջոցառումներով պարտիան ավելի լայն ասպարեզ բացեց ժողովրդի ստեղծագործական ուժերի զարգացման համար, արագացրեց երկրի առաջընթացը նվիրական նպատակ՝ կոմունիզմ:

Մեր երկրի առջև բացվում են նորանոր հորիզոններ: Պարտիայի առաջին ծրագիրը, որը՝ խնդիր դրեց նվաճել պրոլետարիատի դիկտատուրան, և երկրորդ ծրագիրը, որի նպատակն էր կառուցել սոցիալիզմ, լիովին կատարվեցին: Ներկայումս Սովետական Միությունը թևակոխել է կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը: Պարտիայի ՍՄԿՊ XXII համագումարում ընդունված նոր ծրագրի մեջ տըրված է այդ հասարակարգի ստեղծման կոնկրետ, գիտականորեն հիմնավորված պլանը:

Այժմ պարտիան ժողովրդի բոլոր ջանքերը կենտրոնացնում է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, արդյունաբերական ու գյուղատնտեսական արտադրության հետագա վերելքի վրա: Նա չթուլացող ուշադրություն է դարձնում գաղափարական ճակատին, նոր մարդու կոմունիստական բարձր գաղափարայնության ոգով դաստիարակելուն: Այդ դաստիարակությունն ընթանում է և չի կարող չընթանալ կապիտալիզմի մնացուկների, բուրժուական գաղափարախոսության ու բարոյախոսության բոլոր դրսևորումների դեմ սուր պայքարի մթնոլորտում: Գաղափարական հարցերի մասին ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները պարտիային և ամբողջ սովետական ժողովրդին կօգնեն ավելի հաջողությամբ կառուցել կոմունիզմը:

Աշխատավորների շահերի համար իր անձնվեր պայքարով կոմունիստների պարտիան նվաճել է բոլոր սովետական մարդկանց ջերմ սերը և խոր վստահությունը: Ծնունդ առնելով որպես բանվոր դասակարգի պարտիա, նա այժմ դարձել է ամբողջ ժողովրդի պարտիան: «Դրանում,—ասել է Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXII համագումարում,— դրսևորվում է շահերի և աշխարհայացքի միասնությամբ զոդված սովետական հասարակության միաձույլ միասնությունն ու հզորությունը: Միշտ, թե՛ այն ժամանակ, երբ պայծառ լուսավորում է արևը, թե՛ այն ժամանակ, երբ ամպամած է, հաղթանակների օրերին և լուրջ փորձությունների օրերին, պարտիան ժողովրդի հետ է, ժողովուրդը՝ պարտիայի հետ»:

Ամբողջ առաջադեմ մարդկությունը Լենինի անվան հետ է կապում այն հսկայական փոփոխությունները, որոնք անճանաչելի են դարձրել երկրագունդը և հսկայական տարածություններում ջնջել են կապիտալիզմի ու գաղութակալության սև բծերը: Բուռն թափով ծավալվում է մարդկության համաշխարհային-

պատմական շրջադարձը կապիտալիզմից դեպի սոցիալիզմ, որն սկսվեց 1917 թվականի ռեվոլյուցիոն փոթորիկներում։ Այժմ սոցիալիզմը դարձել է համաշխարհային սիստեմ, որոշիչ ազդեցություն է գործում հասարակական զարգացման ամբողջ ընթացքի վրա։ Հակառակ ռեակցիայի կատաղի դիմադրությանը, միջազգային կոմունիստական շարժումը նորանոր դիրքեր է գրավում և հորդառատ գետի պես տարածվում է մեր մոլորակի վրա։ Եթե 1928 թվականին ամբողջ աշխարհում կար 1,6 միլիոն կոմունիստ, ապա այժմ նրանց թիվը գերազանցում է 42 միլիոնից։ Ներկայումս կոմունիստական պարտիաներ են գործում գրեթե 90 երկրներում։ Դա մեր ժամանակի ամենաազդեցիկ քաղաքական ուժն է։

Սովետական Միության կոմունիստական պարտիան բարձր պարզել է պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշը։ Նա անդուլ հոգատարություն է ցուցաբերում եղբայրական պարտիաների միասնության և համախմբվածության նկատմամբ, դրա մեջ տեսնելով կոմունիզմի նոր հաղթանակների կարևորագույն գրավականը։ Մեր պարտիան արթուն կերպով պահպանում է մարքսիստական-լենինյան տեսության անաղարտությունը և տալիս է ռևիզիոնիզմի, դոգմատիզմի և աղանդավորության ամեն մի դրսևորման դեմ վճռական պայքարի օրինակ։

Աշխարհի բոլոր ժողովուրդները բարձր են գնահատում Սովետական Միության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը։ Լենինյան պարտիան անդուլ և ներգործուն պայքար է մղում իմպերիալիզմի դեմ, վիժեցնում է նրա ագրեսիվ պլանները, հաստատակամորեն իրականացնում է հասարակական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքները։ Սովետական Միությունը խաղաղության և առաջադիմության անխորտակելի ամրոց է, նրա արտաքին քաղաքականությունը ակտիվորեն պաշտպանում են բոլոր խաղաղասեր ժողովուրդները։

Սովետական Միության լենինյան կոմունիստական պարտիան, աշխարհի վրա բարձրացնելով ազատության ջահը, սոցիալիզմի և կոմունիզմի դրոշը, XX դարը փառքով պսակեց որպես մարդկության ճակատագրի մեջ արմատական փոփոխությունների դար։ Կոմունիստական պարտիայի դրոշը, որը վաթսուն տարի առաջ բարձրացրեց մեծ Լենինը, այժմ լուսավորում է ամբողջ առաջավոր մարդկության ուղին։

Ի. ԱԼԵՔՍԱՆԴՐՈՎ

# ՊԱՐՏԻԱՅԻ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՎ ԿԱԶՄԱԿԵՐՊԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԷՏԱՊՈՒՄ

Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, ինչպես նշված է ՍՄԿՊ ծրագրում, բնութագրվում է կոմունիստական պարտիայի, որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, դերի ու նշանակության հետագա աճմամբ։ Դա պայմանավորված է կոմունիստական շինարարության՝ քաղաքական և կազմակերպական ղեկավարման ավելի բարձր մակարդակ պահանջող մասշտաբների աճմամբ ու խնդիրների բարդությամբ, մասսաների ստեղծագործական ակտիվության վերելքով, միլիոնավոր նոր աշխատավորների ներգրավումով պետական գործերի և արտադրության կառավարման մեջ, սոցիալիստական դեմոկրատիայի է՛լ ավելի զարգացմամբ, հասարակական կազմակերպությունների դերի մեծացմամբ, գիտական կոմունիզմի տեսության, նրա ստեղծագործական զարգացման ու պրոպագանդման նշանակության աճմամբ, աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը ուժեղացնելու և մարդկանց գիտակցության մեջ անցյալի մնացուկները հաղթահարելու համար մղվող պայքարի անհրաժեշտությամբ։

Պարտիան վերածվել է սովետական ժողովրդի ավանգարդի, դարձել է ամբողջ ժողովրդի պարտիան, ընդլայնվել է նրա ղեկավար ազդեցությունը հասարակական կյանքի բոլոր կողմերի վրա։ Նա աչալուրջ կերպով նայում է ապագային, ժողովրդի առջև բացում է առաջընթացի գիտականորեն հիմնավորված ուղիներ, մասսաների մեջ արթնացնում է վիթխարի եռանդ, նրանց առաջնորդում դեպի հոյակապ խնդիրների լուծում։

Մարքսիզմ-լենինիզմը ապացուցել է, որ հասարակական ոչ մի սիստեմ չի կարող գոյություն ունենալ առանց կազմակերպող, ուղղություն տվող իշխանության։ Դա առավել ևս վերաբերում է կոմունիզմին, որը ի տարբերություն նախորդ բոլոր հասարակական-տնտեսական ֆորմացիաների, կազմավորվում է ոչ թե տարերայնորեն, այլ մարդկանց գիտակցական գործունեության, ժողովրդական միլիոնավոր մասսաների պատմական ստեղծագործության շնորհիվ։

Վ. Ի. Լենինը նոր հասարակության կառուցումը անխզելիորեն կապում էր կոմունիստական պարտիայի, որպես կազմակերպող և ուղղություն տվող ուժի հետ։ Նա գրում էր, որ ղեկավարելու համար անհրաժեշտ է ունենալ ռևոլյուցիոներ-կոմունիստների մի կոփված բանակ։ Այդ

բանակն էլ հենց կոմունիստական պարտիան է։ Պարտիայի ղեկավարությունը հանդիսանում է սովետական ժողովրդի ձեռք բերած բոլոր հաղթանակների կարևորագույն պայմանը։

Սոցիալիստական հասարակությունը ուժեղ է իր կազմակերպվածությամբ և մասսաների գիտակցականությամբ։ Նրա հաջող զարգացման համար անհրաժեշտ է, որպեսզի ճիշտ տեղադրվեն բոլոր ուժերը, որպեսզի ներդաշնակություն և ռիթմ լինի ամբողջ կյանքում։ Սոցիալիզմը չի կարող զարգանալ տարերայնորեն, նրանում չեն կարող իշխել անկազմակերպվածությունն ու անարխիան։ Իսկ ո՞վ պետք է կարգավորի հասարակության առաջընթացը, ապահովի ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացումը։ Կոմունիստական պարտիան, որը զինված է գիտական ուսմունքով՝ մարքսիզմ-լենինիզմով և ղեկավարվելով նրանով, բացահայտում է առաջընթացի գիտականորեն հիմնավորված ուղիներ, միավորում և մեծ նպատակին է ուղղում աշխատավորների բոլոր ջանքերը։ Մեր կյանքում չկա մի այնպիսի բնագավառ, որի զարգացումը չղեկավարվի ու ուղղություն չստանա կոմունիստական պարտիայի կողմից։ Մեր պարտիան սովետական ժողովրդի հեղինակավոր ու փորձված առաջնորդն է, աշխարհում առաջին կոմունիստական հասարակության մեծ շինարարության կազմակերպիչը։

Մեր հասարակության զարգացման տարբեր էտապներում պարտիան հաստատակամորեն մշակել և կիրառել է մասսաներին կազմակերպելու և տնտեսությունը վարելու առավել նպատակահարմար ձևեր ու մեթոդներ, ապահովելով կոմունիզմի կառուցման ամբողջ աշխատանքի ճիշտ ղեկավարումը, այդ աշխատանքին տալով կազմակերպված, պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ։

Այդ առավել ցայտուն կերպով դրսևորվեց վերջին տասնամյակի ընթացքում, երբ ՍՄԿՊ-ն մշակեց ու իրականացրեց մի շարք խոշոր միջոցառումներ, որոնք մեծ ներդրում էին կոմունիզմի կառուցման տեսության և պրակտիկայի մեջ։ Պարտիան հարստացրեց մարքսիզմ-լենինիզմը նոր գաղափարներով, մասնավորապես սոցիալիզմից կոմունիզմին անցման օրինաչափությունների, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ուղիների, կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորման և նոր մարդու դաստիարակման, արդի դարաշրջանի բնույթի, համաշխարհային սոցիալիստական սիստեմի զարգացման օրինաչափությունների, մեր ժամանակներում պատերազմների կանխման հնարավորության մասին։ Մեր պարտիայի տեսական վիթխարի աշխատանքը առավել լիակատար կերպով իր մարմնավորումը գտավ ՍՄԿՊ ծրագրում, որն իրավամբ հանդիսանում է ՍՍՌՄ-ում կո-



մունիզմի կառուցման գիտական պլան։

Պարտիան անդուլ կերպով հոգ է տանում հասարակական արտադրության անընդհատ զարգացման և աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման մասին։ Նա իր ջանքերի առավելագույնը կենտրոնացնում է երկրի հետագա էլեկտրիֆիկացման, արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացմանն ու ավտոմատացման կարևոր խնդիրների լուծման վրա։

Պարտիայի ու ժողովրդի նպատակադրված ստեղծագործական աշխատանքը նորանոր մեծ արդյունքներ է տալիս։ Այդ մասին է վկայում յոթնամյակի խնդիրների կատարումը, որը կարևոր էտապ է կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ճանապարհին։ Յոթնամյակի չորս տարում երկրի արդյունաբերական արտադրանքի ծավալն աճեց 45 տոկոսով՝ նախատեսված 39 տոկոսի փոխարեն։ Այդ ժամանակամիջոցում պլանից դուրս արտադրվել է 28 միլիարդ ռուբլու արտադրանք։ Մեր երկիրը բարձր տեմպեր է պահպանում ԱՄՆ-ի հետ խաղաղ տնտեսական մրցության մեջ։ Անցած հնգամյակում բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքը ՍՍՌՄ-ում աճեց 48 տոկոսով, իսկ ԱՄՆ-ում՝ միայն 8 տոկոսով։

Պարտիան առանձնահատուկ ուշադրություն է նվիրում գյուղատնտեսության զարգացմանը։ Այդ ուղղությամբ իրագործվել են մի շարք խոշոր միջոցառումներ, որոնք տվեցին իրենց որոշակի արդյունքները։ Կարևոր էտապ էր մեր գյուղատնտեսության զարգացման գործում խամ ու խոպան հողերի յուրացումը, որի շնորհիվ զգալիորեն ավելացավ հացահատիկի արտադրությունը։ Նկատելիորեն աճել է նաև անասնապահական մթերքների արտադրությունը։ Գյուղատնտեսության ղեկավարման վերակառուցումը, կոլտնտեսային, սովխոզային արտադրական վարչությունների ստեղծումը ավելի է բարելավում գյուղատնտեսական արտադրության ղեկավարումը և նպաստում նրա անշեղ բարձրացմանը։

Կոմունիստական պարտիան անշեղորեն ղեկավարվում է Վ. Ի. Լենինի ցուցումներով։ Սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման պայմաններում առաջին պլանի վրա են քաշվում ժողովրդական տնտեսության կազմակերպման, հաշվառման ու վերահսկողության, արտադրության ղեկավարման հարցերը։ Նա վերականգնում ու զարգացնում է ժողովրդական տնտեսության ղեկավարման լենինյան սկզբունքներն ու կազմակերպական ձևերը, ելնելով այն վիթխարի փոփոխություններից, որոնք տեղի են ունեցել մեր արդյունաբերության, գյուղատնտեսության և շինարարության մեջ։ Կյանքը ամբողջովին հաստատեց տնտեսության ղեկավարման այդ նոր ձևերի ճշտությունը և անհրաժեշտությունը։

ՍՄԿՊ Կենտկոմի նոյեմբերյան

(1962 թ.) պլենումը ավելի զարգացրեց ու կատարելագործեց պետական ու պարտիական շինարարության լենինյան սկզբունքները, որոշում ընդունեց արտադրական սկզբունքի հիման վրա պարտիական օրգանների վերակառուցման մասին։ Պլենումի որոշումների գլխավոր իմաստն է՝ պարտիայի բոլոր օրգանների, պարտիական կազմակերպությունների ու կոմունիստների ուշադրությունն ու ջանքերը կենտրոնացնել կոմունիստական շինարարության գլխավոր խնդիրների կենսագործման վրա, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գլխավոր հարցերի վրա։

Պարտիայի Կենտկոմի պլենումը հատուկ ուշադրություն դարձրեց պարտիական, պետական և հասարակական վերահսկողության բարելավման ու կատարելագործման վրա։ Պլենումում նշվեց, որ կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում, երբ է՛լ ավելի է աճում պարտիայի ղեկավար և ուղղություն տվող դերը մեր պետական սիստեմում, պարտիան որպես ամենահեղինակավոր հասարակական կազմակերպությունը սոցիալիստական հասարակարգում, պետք է գլխավորի վերահսկողության ամբողջ գործը։

Կենտկոմի պլենումի որոշմամբ վերակառուցվեց երկրում վերահսկողության սիստեմը, նրա հիմքում դրվեց լենինյան ցուցումը պետական և պարտիական վերահսկողության միավորման, միասնական մշտական գործող վերահսկողության ստեղծման մասին։ Միասնական պարտիական-պետական վերահսկողության նպատակն է օգնել պարտիային ու պետությանը ՍՄԿՊ ծրագրի կատարման գործում, սիստեմատիկ (կազմակերպել պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարումը, կատարելագործել կոմունիստական շինարարության ղեկավարումը, պահպանել պարտիական ու պետական կարգապահությունը և սոցիալիստական օրինականությունը։ Դրա հետ միասին, միասնական վերահսկողությունը պետք է խստորեն վերահսկի աշխատանքի չափի և սպառման չափի վրա, փակի բոլոր մուտքերն ու անցքերը ծուլիկների, կաշառակերների, ձրիակերների, բյուրոկրատների, այն բոլոր մարդկանց համար, ովքեր ձեռք կբարձրացնեն պետական բարիքների վրա։ Այդ ամենը կնպաստի մեր կյանքում դեռևս գոյություն ունեցող բացասական երևույթների, կապիտալիզմի մնացուկների լրիվ վերացմանը և կոմունիստական գիտակցականության հաղթանակին։

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման և կոմունիստական հասարակական հարաբերությունների ձևավորմանը զուգընթաց պարտիան լուծում է նաև նոր մարդու դաստիարակության խնդիրը, որը մեր ամբողջ գաղափարական աշխատանքի գլխավոր բովանդակությունն ու նպատակն է հանդիսանում։ Շնորհիվ պարտիայի գաղափարական-դաստիարակչական վիթխարի աշխատանքի և մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթանակի, մեզանում ձևավորվել է նոր մարդը, կոմունիզմ կառուցող սովետական քաղաքացին։ Ներկայումս պարտիան խնդիր է դրել հասարակության բոլոր անդամների մոտ ձևավորել կոմունիստական աշխարհայացք, հասնել կոմունիստական բարոյականության լիակատար հաղթանակին։ Սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակությունը իրականացվում է բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող անհաշտ պայքարում։

Այդ տեսակետից առանձնապես մեծ նշանակություն ունեցավ և այսուհետև էլ կունենան պարտիայի ու կառավարության ղեկավարների հետ գրականության ու արվեստի գործիչների հանդիպումները, ընկեր Ն. Ս. Խրուշչովի ելույթը այդ հանդիպումների ժամանակ և մանավանդ ՍՄԿՊ հունիսյան պլենումի որոշումները։ Այդ հանդիպումների ժամանակ սուր կերպով դրվեցին արվեստի ու գրականության հասարակական դերի, նրանց դասակարգային նպատակաուղղվածության հարցերը։ Մեկ անգամ ևս ընդգծվեց, որ երկու հակադիր սիստեմների գոյության պայմաններում չի կարող լինել խաղաղ գոյակցություն սոցիալիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև, ուստի և անհրաժեշտ է հետևողական պայքար մղել մեր կյանքում, գրականության և արվեստի մեջ խորթ հայացքներ ու բարքեր մտցնելու ամեն տեսակի փորձերի դեմ։ Պարտիան անդուլ կերպով հոգ է տանում այն մասին, որպեսզի ժողովրդի հոգևոր զարգացման և կոմունիստական դաստիարակության զինանոցի բոլոր զենքերը՝ մամուլը, ռադիոն, գրականությունը, գեղարվեստը, երաժշտությունը, կինոն, թատրոնը միշտ լինեն մարտական վիճակում, ամբողջովին ծառայեն ժողովրդի շահերին, դիպուկ կերպով խփեն մեր թշնամիներին։ Կոմունիստական պարտիան միշտ պայքարել է և կպայքարի բուրժուական ռեակցիոն գաղափարների դեմ, միշտ պաշտպանել է և կպաշտպանի մեր գաղափարների, մարքս-լենինյան ուսմունքի անաղարտությունը։

Պարտիայի գաղափարական աշխատանքի հասունացած հարցերը կոմունիզմի ծավալուն կառուցման ներկա էտապում քննարկվեցին ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում։ Պլենումի որոշումները նոր թափ հաղորդեցին մեր գաղափարական աշխատանքին, մեկ անգամ ևս ցույց տվեցին նրա մեծ դերն ու նշանակությունը կոմունիզմի կառուցման գործում։

Կոմունիզմի հաղթանակը մեր պարտիայի բարձրագույն նպատակն է և պարտիան իր քաղաքական ու կազմակերպական ամբողջ գործունեությունը ծառայեցնում է այդ նպատակին հասնելուն։

Վ. ՍԱՀԱԿՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

# ԽՈՐԱՑՆԵԼ ԻԴԵՈԼՈԳԻԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ԺՈՂՈՎՐԴԻ ԿՅԱՆՔՈՒՄ

# ԽՈՒԾ ՄՐՑԱՊՈՒՅՑ ԻՐԱԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ԺՈՂՈՎՐԴԻ ԿՅԱՆՔՈՒՄ

Օրերս ավարտեց իր ստեղծագործ և բեղմնավոր աշխատանքը Սովետական Միության կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի հունիսյան պլենումը, որը խոշորագույն իրադարձություն էր պարտիայի և ժողովրդի կյանքում։

Պլենումը քննարկել է պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները, որի մասին զեկուցումով հանդես է եկել ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար Լ. Ֆ. Իլյիչովը։

Լենինյան գաղափարների հաղթանակի համար մղվող պայքարի պատմության մեջ,— ասում է զեկուցողը,— վերջին տասնամյակը մի առանձին տեղ է գրավում։ Այդ տարիներին տեղի ունեցած հասարակական-քաղաքական տեղաշարժերը բացառիկ խորությամբ ու մասշտաբներով ազդեցություն գործեցին ոչ միայն ներկա, այլև գալիք սերունդների ճակատագրի վրա։

Ինչպես հայտնի է վերջին տասնամյակը նշանավոր է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի բուռն զարգացմամբ, սոցիալիստական դեմոկրատիայի իսկական ծաղկմամբ, պետական ու հասարակական կյանքում լենինյան նորմաների վերականգնմամբ ու զարգացմամբ, Սովետական Միության միջազգային հեղինակության բարձրացմամբ։ Անցած տասնամյակը նշանավոր է նաև գաղափարական բնագավառի հաջողություններով։ Պարտիան ստեղծագործաբար լուծում է կյանքի նոր իրադրության առաջ քաշած տեսական ու գործնական հարցերը։ Ռևոլյուցիոն տեսության զարգացման գործում պարտիայի ներդրման մասին առավել լրիվ պատկերացում են տալիս XXII համագումարի փաստաթղթերը, ՍՄԿՊ ծրագիրը, որը ժամանակակից հասարակական-գիտական մտքի բարձրագույն նվաճումն է։

Այնուհետև զեկուցողը ընդգծում է, որ երկու գլխավոր գործոն են որոշում արդի պայմաններում պարտիայի գաղափարական աշխատանքի բնույթը և ուղղությունը՝ կոմունիզմի ծավալուն կառուցումը, պարտիայի տեսական ու կազմակերպչական գործունեության ծավալի մեծացումը, պայքարը մարդկանց գիտակցությունից անցյալի մնացուկները արմատախիլ անելու համար, նոր մարդու դաստիարակության համար. արտաքին՝ համաշխարհային ուժերի հարաբերակցության արմատական փոփոխում հօգուտ սոցիալիզմի, սոցիալիստական սիստեմի ամրապնդում ու զարգացում, բանվորական և ազգային-ազատագրական շարժման վերելք, հասարակական երկու սիստեմների մրցության վճռական էտապ, պայքար բուրժուական գաղափարախոսության դեմ։





Մեր խնդիրն այն է, որ ծավալենք հարձակում բուրժուական գաղափարախոսության վրա, մերկացնենք իմպերիալիզմի մարդատյաց էությունը, նրա գազանային բարքերն ու սովորությունները, նրա դեգրադացող կուլտուրան ու նեխած բարոյախոսությունը, ծավալենք հարձակում կապիտալիզմի մնացուկների վրա, սովետական մարդկանց գիտակցությունը մաքրենք հին կարգերի բոլոր խոցերից, դաստիարակենք կոմունիզմի ակտիվ ու կայուն մարտիկներ։

Հետևելով լենինյան պատգամներին, շարունակեց զեկուցողը, պարտիան գաղափարական աշխատանքի մակարդակը չափում է նրա գործնական արդյունքներով, այն բանով, թե նա ինչպիսի իրական ներգործություն է ունենում աշխատանքի վրա։ Ամեն մի պլանի հաջող կատարման ամենահուսալի ուղին կոլեկտիվում մարդկանց դաստիարակության լավ դրվածքն է, կենդանի շփումը նրանց հետ, անկեղծ հոգատարությունը նրանց նկատմամբ։ Այդ է մարդու սրտի, գիտակցության ուղին։ Պարտիայի համար միևնույնը չէ, թե հատկապես ինչ գնով է կատարվում պլանը։ Չէ որ արտադրությունը կարող է լավ կազմակերպել նաև կապիտալիստը։ Սովետական ղեկավարից պահանջվում է անհամեմատ շատ բան՝ պլանը կատարելիս, պլանի կատարման ու գերակատարման պայքարի ընթացքում դաստիարակել մարդկանց, նրանց միջև ձևավորել նոր հարաբերություններ։

Զեկուցման մեջ ընդգծվում է, որ հանրային սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի դաստիարակությունը նոր մարդու համար մղվող պայքարի վճռական օղակն է։ Մեզ մատչելի բոլոր ուժերով՝ թե վարչական միջոցառումներով, թե գաղափարա-դաստիարակչական միջոցառումներով, հարկավոր է գիտակցությունից խարանել հանրային սեփականության նկատմամբ, իբրև «կազյոննի», «ուրիշի» սեփականության նկատմամբ եղած սառը հայացքը։

Մեր երիտասարդությունը եղել է և մնում է սոցիալիստական հասարակության հիանալի ու ակտիվ մասը, որը նվիրված է կոմունիզմի մեծ իդեալներին։ Սակայն կյանքը ծնում է ոչ միայն այնպիսի մարդիկ, որոնք ազնվորեն են կատարում իրենց պարտքը։ Նա երբեմն մակերևույթ է նետում նաև այնպիսի երիտասարդների, որոնք կյանքի նկատմամբ իրենց փչացած վերաբերմունքով, աշխատանքից վախենալով, քաղքենիական օյինբազություններով ու ճաշակներով հակասության մեջ են մտնում մեր երկրում իշխող գործելակերպի ու մտածելակերպի հետ։

Այնուհետև զեկուցողը նշում է, որ նոր հասարակության բարոյագիտության հիմքում ընկած է գաղափարական համոզվածությունը։ Մարքսիզմ-լենինիզմի հիմունքների տիրապետումը, կոմունիստական աշխարհայացքի յուրացումը, պարտիայի քաղաքա-

նության խոր ըմբռնումը այժմ կենսական անհրաժեշտություն են դարձել յուրաքանչյուր սովետական մարդու համար: Գաղափարական աշխատանքի առաջին պլանում դրված է սովետական յուրաքանչյուր մարդու կողմից ՍՄԿՊ ծրագրի՝ մեր պայքարի ու հաղթանակների ծրագրի խոր ուսումնասիրության խնդիրը:

Գիտական աշխարհայացքի և կոմունիստական բարոյականության ձևավորումը անհնարին են առանց պայքարելու կրոնական գաղափարախոսության դեմ: Կրոնը գիտական աշխարհայացքի գլխավոր հակառակորդն է երկրի ներսում, անցյալի ամենաամուր մնացուկներից մեկը, որից չեն ազատվել բնակչության դեռ զգալի խավեր:

Զեկուցման մի մեծ բաժին նվիրված է նոր մարդու դաստիարակության գործում դպրոցի, մամուլի ու ռադիոյի, կինոյի և հեռուստատեսության, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների, քաղաքական լուսավորության սիստեմի, ագիտացիոն աշխատանքի դերի մասին: Զեկուցողը անդրադարձավ նաև նոր մարդու դաստիարակության հզոր միջոցի՝ գրականության ու արվեստի խնդիրներին:

Զեկուցման մեջ զգալի տեղ է նվիրված պարտիական ղեկավարության հարցերին, որը գաղափարական աշխատանքի հաջողությունների հիմքն է: XXII համագումարը, ՍՄԿՊ ծրագիրը,— ասում է Լ. Ֆ. Իլյիչովը,— հստակորեն որոշել են գաղափարական գործունեության նպատակները, ուղղությունն ու հիմնական խնդիրները:

Մեծ և փայլուն ճառով պլենումում հանդես է գալիս ՍՄԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչովը: Նա լենինյան խորիմաստությամբ պարզաբանում է պարտիայի գաղափարական աշխատանքի հերթական խնդիրները և պարտիայի առաջիկա անելիքները համաշխարհային կոմունիստական շարժման միասնությունը է՛լ ավելի ամրապնդելու գործում:

Պարտիայի գործունեության գլխավոր արդյունքն այն է,— ասված է պլենումի որոշման մեջ,— որ սովետական իշխանության տարիներին սոցիալիզմը մեր երկրում հաղթել է լիովին ու վերջնականապես, դաստիարակվում է կոմունիստական իդեալներով և բարոյական բարձր սկզբունքներով մարդ, միլիոնավոր մարդկանց աշխարհայացքը պատմության մեջ առաջին անգամ ձևավորվում է մարքսիզմ-լենինիզմի գիտական հիմքերի վրա, սովետական ժողովուրդն այժմ ունի կոմունիզմի կառուցման կոնկրետ, գիտականորեն հիմնավորված պլան:

Այժմ իմպերիալիստական երկրների կառավարող շրջանները, չհրաժարվելով սոցիալիզմի դեմ ուղղված պայքարի ուրիշ ձևերից,



գլխավորապես հույսը դնում են սոցիալիստական պետությունների նկատմամբ գաղափարական դիվերսիաների, կատաղի հակակոմունիզմի վրա: Հակակոմունիզմի դրոշով իմպերիալիստները սոցիալիստական սիստեմի երկրների տնտեսական ու քաղաքական խտրականություն են իրագործում, տենդորեն հրահրում են սպառազինությունների մրցավազք: Բոլոր միջոցներով նրանք փորձում են «գաղափարների պատերազմը» փոխադրել սոցիալիստական երկրները: Գաղափարախոսությունների խաղաղ գոյակցության լոզունգի քողով նրանք փորձում են մեր հասարակության մեջ անցկացնել արվեստի «անպարտիականության», «ստեղծագործության բացարձակ ազատության» գաղափարազրկության և ապոլիտիկության, «սերունդների կոնֆլիկտի» կեղծ կոնցեպցիաները, գաղափարապես կազմալուծել անկայուն մարդկանց:

Գաղափարախոսությունների խաղաղ գոյակցության քարոզը դավաճանություն է մարքսիզմ-լենինիզմի նկատմամբ, դավաճանություն է բանվորների և գյուղացիների գործի նկատմամբ:

ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման մեծ պլանի մշակումը և այն կենսագործելու պայմանների ստեղծումը նախապատրաստվեցին սովետական հասարակության ամբողջ նախորդ զարգացմամբ, առանձնապես այն խոշորագույն սոցիալ-տնտեսական միջոցառումներով, որ պարտիան իրագործեց վերջին տասնամյակում: Իր XX համագումարում պսակազերծելով և դեն նետելով Ի. Վ. Ստալինի անձի պաշտամունքը, պարտիան վերջ տվեց պարտիական, պետական կյանքի լենինյան նորմաների խախտումներին, սուբյեկտիվիզմին և դոգմատիզմին էկոնոմիկայի, քաղաքականության ու գաղափարախոսության ասպարեզում, լայն ասպարեզ բացեց ժողովրդական զանգվածների նախաձեռնության ու ակտիվության համար:

Պլենումը խնդիր է դրել պարտիայի, պետական օրգանների, արհմիությունների, կոմերիտմիության և մյուս բոլոր հասարակական կազմակերպությունների ջանքերը կենտրոնացնել գաղափարական աշխատանքի հետևյալ հիմնական ուղղությունների վրա, որոնք համապատասխանում են ՍՍՌՄ-ում կոմունիզմի կառուցման և միջազգային ասպարեզում դասակարգային պայքարի ժամանակակից էտապին.

աշխատավորների կոմունիստական աշխարհայացքի ձևավորումը, սովետական մարդկանց գիտակցության ու վարքագծի մեջ անցյալի մնացուկների հաղթահարումը.

կոմունիզմի ակտիվ ու գիտակից կառուցողների աշխատանքային դաստիարակությունը.

ժողովրդի կրթության ու կուլտուրայի բարձրացումը.

ժողովրդին սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելը, վճռական պայքարը հակակոմունիզմի, բուրժուական գաղափարախոսության բոլոր ձևերի դեմ։

Պարտիայի, սովետների, արհմիությունների, կոմերիտմիության գաղափարական աշխատանքի ուղն ու ծուծը պետք է կազմի յուրաքանչյուր սովետական մարդու մեջ հանրօգուտ աշխատանքի նկատմամբ սեր ու հարգանք դաստիարակելը։

Պետք է յուրաքանչյուր աշխատավորի մեջ դաստիարակել պարզ ըմբռնումն այն բանի, որ բարձրագույն արտադրողական աշխատանքի ապահովումը համաժողովրդական խնդիր է, կոմունիզմի կառուցման գլխավոր պայմանը, լայնորեն զարգացնել սոցիալիստական մրցությունը, արմատավորել առաջավոր փորձը, պատվով ու հարգանքով շրջապատել աշխատանքի հերոսներին, պայքարել աշխատավորների ստեղծագործական նախաձեռնության նկատմամբ բյուրոկրատական վերաբերմունքի դեմ, հասարակայնության բոլոր ուժերը հանել պայքարելու պորտաբույծների, հարբեցողների և անբանների դեմ։

Պլենումը կարևոր նշանակություն է տալիս կոմունիստական աշխատանքի շարժման հետագա զարգացմանը, որի մեջ օրգանապես զուգորդվում են աշխատանքի բարձր արտադրողականության համար, նոր տեխնիկային տիրապետելու համար մղվող պայքարը, գիտելիքների ձգտումը, մարդկանց նոր հարաբերությունները, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի հաստատումը կյանքում։

Պետք է սովետական մարդկանց օրավուր դաստիարակել կոլեկտիվիզմի՝ սոցիալիզմի և կոմունիզմի հիմնական հենարաններից մեկի ոգով, ըստ ամենայնի բարձրացնել կոլեկտիվի դաստիարակչական դերը։

Պլենումը առաջարկել է պարտիական կոմիտեներին և սկզբնական պարտկազմակերպություններին՝ ապահովել ագիտացիոն-մասսայական աշխատանքի անխզելի կապը արդյունաբերական ձեռնարկությունների և կառույցների, կոլտնտեսությունների, սովխոզների և հիմնարկների կոլեկտիվների կոնկրետ խնդիրների հետ, դուրս վռնդել ֆորմալիզմը, անհոգի և պաշտոնական վերաբերմունքը, բնակչության տարբեր խավերի շրջանում քաղաքական աշխատանք կատարել դիֆերենցված ձևով, կոլեկտիվի բոլոր անդամներին դաստիարակել աշխատանքի լավագույն օրինակներով, լայնորեն տարածել առաջավոր բանվորների ու կոլտնտեսականնե-



րի փորձը, զարգացնել մարդկանց ընկերականության և փոխօգնության զգացմունքը։

Աշխատանքն ու կենցաղը կոմունիստական ապրելակերպի անխզելի բաղկացուցիչ մասերն են։ Պլենումը բոլոր պարտիական կոմիտեներին, աշխատավորների դեպուտատների տեղական սովետներին, արհմիություններին, կոմերիտմիությանն առաջարկում է պայքար ծավալել կոմունիստական կենցաղի ամրապնդման համար, նրա բարձր կուլտուրայի համար, մեր կենցաղից և ընտանեկան հարաբերություններից անցյալի բոլոր մնացուկները վտարելու համար։

Հաստատակամ պայքար մղել կրոնական նախապաշարումների դեմ, ավելի լայնորեն ծավալել գիտա-աթեիստական աշխատանքը, կոմունիստական աշխատանքի շարժումը պետք է իրապես միացնել կենցաղում կոմունիստական հարաբերությունների համար ծավալվող շարժման հետ։

Պլենումը խնդիր է դրել այսուհետև ևս զարգացնել քաղաքական ու արտադրական պրոպագանդայի այնպիսի մասսայական ձևերը, ինչպիսիք են կոմունիստական աշխատանքի ու առաջավոր փորձի դպրոցները, վարպետների դպրոցները, ժողովրդական համալսարանները, լեկտորիումները։

Պլենումը նշեց, որ պարտիայի առջև, սովետական ամբողջ ժողովրդի առջև կանգնած են կոմունիստական շինարարության փառահեղ խնդիրներ։

Աշխատավորների ռևոլյուցիոն եռանդը պարտիան համարում է աշխարհի վերափոխման հզոր ու անսպառ աղբյուր։ Եվ չկա պարտիական կազմակերպությունների ավելի կարևոր խնդիր, քան ժողովրդի ռևոլյուցիոն ոգու զարգացումը, կյանքի բոլոր ասպարեզներում մասսաների ստեղծագործության համար լայն ասպարեզ բացելը, անհաշտ պայքար ամեն տեսակ պահպանողականության ու լճացման, քաղքենիական անտարբերության դեմ, նեխած բուրժուական գաղափարախոսության ու բարոյականության դեմ։

Պլենումը ջերմ հավանություն է տալիս այն գաղափարներին ու դրույթներին, որոնք ձևակերպված են ստեղծագործական աշխատողների հետ ունեցած հանդիպումների ժամանակ ընկեր Ն. Ս. Խրուշչովի ելույթներում, որոնք արտահայտում են մեր պարտիայի լենինյան գիծը գրականության և արվեստի ասպարեզում, պար-

տիայի հոգատարությունը նրանց հետագա ծաղկման նկատմամբ։
ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը քննարկում է նաև կազմակերպական հարցեր։ Ընկ. ընկ. Լ. Ի. Բրեժնևը, Ն. Վ. Պոդգոռնին ընտրվում են ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղարներ։

Վերջում պլենումում միաձայն որոշում է ընդունվում նաև «Չինաստանի կոմպարտիայի կենտկոմի ներկայացուցիչների հետ ՍՄԿՊ Կենտկոմի ներկայացուցիչների առաջիկա հանդիպման մասին»։

Ագիտատո՛ր, այս օրերին մեծ և պատվավոր խնդիր ունես կատարելու։ Աշխատավորների լայն շրջանում սիստեմատիկաբար, հանգամանորեն, հետաքրքիր և նպատակասլաց կերպով պարզաբանիր ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները։ Ներկայումս քո առաջնահերթ խնդիրն է՝ օգնել պարտիական կազմակերպություններին մասսաների քաղաքական ու աշխատանքային աճած ակտիվությունը հմտորեն ուղղելու տնտեսական և կուլտուրական շինարարության նոր բնագծեր նվաճելու, կոմունիզմի համար մղվող պայքարում նորանոր հաղթանակների հասնելու գործում։ Հիշիր, որ որքան մեզանում բարձր լինի գաղափարական աշխատանքի մակարդակը, այնքան նշանակալի կլինեն կոմունիստական շինարարության հաջողությունները։

ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

# ԼԵՀԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

19 տարի առաջ, 1944 թվականի հուլիսի 22-ին, Սովետական բանակը լիովին ազատագրեց Լեհաստանի տերիտորիան գերմանա-ֆաշիստական զավթիչներից: Լեհաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկայի աշխատավորները ձեռնամուխ եղան նոր, սոցիալիստական կյանքի կառուցմանը: Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների սերտ համագործակցության և օգնության շնորհիվ, պատմական կարճ ժամանակում վերածնված Լեհաստանը Միացյալ բանվորական պարտիայի ղեկավարությամբ սոցիալիզմի կառուցման գործում հասել է նշանակալի հաջողությունների:

Այժմ Լեհաստանի աշխատավորությունը մեծ հաջողությամբ իրականացնում է ժողովրդական տնտեսության զարգացման 1961—1965 թ. թ. հնգամյա պլանը: Ահա մի քանի թվեր և փաստեր այդ մասին:

Լեհաստանի արդյունաբերական արտադրանքը, նախապատերազմյան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 8 անգամ։ Արդյունաբերական արտադրանքի ծավալով ռեսպուբլիկան գրավում է հինգերորդ տեղը Եվրոպայում։

Ածխի հանույթով Լեհաստանը աշխարհում գրավում է վեցերորդ տեղը, իսկ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի չափով՝ երկրորդ տեղը։

Երկրի գործարաններում ամեն տարի ձուլվում է մոտ 8 միլիոն տոննա պողպատ, որը ավելի քան 5 անգամ գերազանցում է նախապատերազմյան ժամանակաշրջանի մակարդակը։

1962 թվականին մեքենաշինարարները արդյունաբերության մեջ յուրացրել և գործարկել են ավելի քան 500 նոր մեքենաներ ու սարքեր, այդ թվում՝ ծովային նավեր, հացահատիկ և ճակնդեղ հավաքող կոմբայններ, ավտոմատ կերպով գործող ծանր հաստոցներ, ինքնաթափ բեռնատար վագոններ և այլն։

Այժմ Լեհաստանի արդյունաբերությունը պլաստմասսայից մոտ 3 հազար տարբեր տեսակի արտադրանք է մշակում։ Անցած 10 տարում մեծ չափով ավելացել է պլաստմասսայի թողարկումը, որը տարեկան 4.000 տոննայից հասել է 65.000 տոննայի։

Այս տարվա հունվարի 1-ի տվյալներով Լեհաստանի առևտրական նավատորմում հաշվվում էր 177 ծովային նավ, ավելի քան 1 միլիոն տոննա ընդհանուր ջրատարողությամբ։ Անցյալ տարի նրա առևտրական նավատորմը համալրվեց 21 ծովային նավով, մոտ 160 հազար տոննա բեռնատարողությամբ։

1961—1965 թվականների հնգամյա պլանով Լեհաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկայում ընդարձակվելու և վերակառուցվելու են 760 արդյունաբերական ձեռնարկություններ։ Նախատեսվում է այդ տարիներին կառուցել նաև 254 նոր արդյունաբերական ձեռնարկություն։

Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի քսանամյա պլանի դիրեկտիվներով նախատեսված է ներկայիս համեմատությամբ, 1980 թվականին արդյունաբերական արտադրանքը ավելացնել 5 անգամ, իսկ ազգային եկամուտը՝ 4 անգամ։

Լեհաստանը հաճարի և կարտոֆիլի համախառն արտադրությամբ գերազանցում է եվրոպական շատ երկրների, Սովետական Միությունից հետո նա գրավում է երկրորդ տեղը Եվրոպայում։

1962 թվականին անասունների գլխաքանակը Լեհաստանում աճեց ավելի քան 155 հազարով, կաթի արտադրանքը ավելացավ 42 միլիոն լիտրով։

Երկրի 2180 գյուղեր անցյալ տարի առաջին անգամ ստացան էլեկտրական լույս։ Ռեսպուբլիկայում էլեկտրիֆիկացված են 88 հազարից ավելի գյուղացիական և մոտ 500 պետական գյուղական տնտեսություններ։ Այս տարի էլեկտրաէներգիա կստանան ավելի քան 90 հազար գյուղացիական տնտեսություններ և մոտ 450 պետական գյուղական տնտեսություններ ու հողագործական արտադրական կոոպերատիվներ։

Ժողովրդական կարգերի տարիներին լայն թափ է ստացել բնակարանային շինարարությունը։ Միայն անցած հնգամյակում կառուցվել է մեկ միլիոն 700 հազար բնակարան։

Նոր հնգամյակում (1961—1965) նախատեսված է կառուցել 1,8 միլիոն բնակարան՝ քաղաքներում և 950 հազար բնակարան՝ գյուղական վայրերում։

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ.*— Մարքսիզմ-լենինիզմը մեր դրոշն է, մեր մարտական զենքը, *ճառ, արտասանած ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 30-ի համարում։*

*Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ*— Պարտիայի գաղափարական աշխատանքի ներթական խնդիրները, *զեկուցում ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 19-ի և 20-ի համարներում։*

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար ընկ. Լ. Ֆ. Իլյիչովի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 23-ի համարում։*

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի պլենումը, *ինֆորմացիոն նյութեր՝ տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 19-ից մինչև 23-ի համարներում։*

Լենինյան կուրսով, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 25-ի համարում։*

## 2. ՌՍԴԲՊ ԵՐԿՐՈՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ 60-ԱՄՅԱԿԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*—Ինչից սկսել, *Երկեր, հ. 5, էջ 11-25, Հայպետհրատ, 1948։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Ի՞նչ անել, *Երկեր, հ. 5, էջ 457—707, Հայպետհրատ, 1948։*

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— ՌՍԴԲՊ-ի II համագումարը, *Երկեր, հ. 6, էջ 593-648, Հայպետհրատ, 1949։*

ՌՍԴԲՊ երկրորդ համագումարը, *ՍՄԿՊ պատմություն, Հայպետհրատ, 1960։*

Լենինյան մեծ դրոշով, *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 14-ի համարում։*

## 3. ԼԵՆԻՆՅԱՆ ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԸ ՏԱՐԲԵՐ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔ ՈՒՆԵՑՈՂ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

*Վ. Ի. ԼԵՆԻՆ*— Խաղաղություն ժողովուրդներին, *Երկեր, հ. 26, էջ 57—60, Հայպետհրատ, 1951։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Խաղաղ գոյակցությունը Սովետական Միության արտաքին քաղաքականության գլխավոր կուրսն է, *ՍՄԿՊ XXII համագումարի նյութերը, էջ 33-39, Հայպետհրատ, 1962։*

Խաղաղ գոյակցությունը և ընդհանուր խաղաղության համար մղվող պայքարը. *ՍՄԿՊ ծրագրի առաջին մասի 8-րդ գլուխը։*



Ն. Ս. Խրուշչովի պատասխանները իտալական «Պաեզե Սերա» և «Օրա» *թերթերի թղթակցի հարցերին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 8-ի համարում։*

## 4. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՏԻԵԶԵՐԱԳՆԱՑՆԵՐԻ ՆՈՐ ԵՎ ՓԱՌԱՊԱՆԾ ՀԱՂԹԱՆԱԿԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Միության կոմունիստական պարտիային և ժողովուրդներին, բոլոր երկրների ժողովուրդներին և կառավարություններին, ամբողջ առաջադեմ մարդկությանը, ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահության և Սովետական Միության կառավարության դիմումը, *տպագրված «Ս. Հ.»-ի հունիսի 20-ի համարում։*

*Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ*— Ճառ արտասանած Մոսկվայի Կարմիր հրապարակում Վալենտինա Տերեշկովային և Վալերի Բիկովսկուն մեծարելու ժամանակ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 23-ի համարում։*

*Վ. Ֆ. ԲԻԿՈՎՍԿԻ*— Ճառ Մոսկվայի Կարմիր հրապարակում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 23-ի համարում։*

*Վ. Վ. ՏԵՐԵՇԿՈՎԱ*— Ճառ Մոսկվայի Կարմիր հրապարակում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 23-ի համարում։*

## 5. ԿԱՆԱՆՑ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՆԳՐԵՍԸ

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ս. Խրուշչովի ուղերձը կանանց համաշխարհային կոնգրեսին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 25-ի համարում։*

*ԷԺԵՆԻ ԿՈՏՈՆ*— Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան խաղաղության, ազգային անկախության, կանանց իրավունքների և երեխաների երջանկության համար մղվող պայքարում, *զեկուցում տրված կանանց համաշխարհային կոնգրեսում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 26-ի համարում։*

Բոլոր մայր ցամաքների կանանց մեծ ասամբլեան, *ինֆորմացիոն հաղորդագրություն կանանց համաշխարհային կոնգրեսի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 25-ի համարում։*

## 6. ՀԱՆՐԱՅԻՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ՀԻՄՔԵՐԻ ՀԻՄՔՆ Է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Կոնստիտուցիա, *առաջին գլուխ, 4-րդ և 5-րդ հոդվածներ։*

*Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ*— Հանրային սեփականությունը մարդկանց միջև նոր հարաբերություններ դաստիարակելու հիմքն է, *ՍՄԿՊ Կենտկոմի հունիսյան պլենումում տրված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 19-ի համարում։*

## 7. ԱՄԵՆ ՄԻ ՀԱՆՐՕԳՈՒՏ ԱՇԽԱՏԱՆՔ ՀԱՐԳԵԼԻ ԵՎ ՊԱՏՎԱՎՈՐ Է

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Պարտիայի խնդիրները գաղափարախոսության, դաստիարակության, կըր-

թության, գիտության ու կուլտուրայի բնագավառում, *ՍՄԿՊ ծրագրի երկրորդ մասի 5-րդ գլուխ։*

*Լ. Ֆ. ԻԼՅԻՉՈՎ* — Մեր կոմունիստական աշխատանքի ճաղրանակին կնասենք աշխատանքի նկատմամբ սեր դաստիարակելու միջոցով, *ՍՄԿՊ հունիսյան պլենումում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 19-ի համարում։*

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 23-ի համարում։*

## 8. ԱՆԿՈՐՈՒՍՏ ՀԱՎԱՔԵՆՔ ՀԱՅԱՀԱՍՏԻԿԻ ԱՌԱՏ ԲԵՐՔԸ

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեում, Կուստանայի մարզի Արկալիկի արտադրական վարչության Սառիուզի բանվորների ու մասնագետների կոլեկտիվի նախաձեռնության մասին, *որոշում, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 7-ի համարում։*

Հարուստ բերք ճավաքենք լայնակալ տեխնիկայով, Կուստանայի մարզի Արկալիկի արտադրական վարչության Սառիուզի սովխոզի բանվորների ու մասնագետների կոլեկտիվի դիմումը երկրի բոլոր ճողագործներին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թվականի հունիսի 7-ի համարում։*

ՀԿՊ Կենտկոմի Ստ. Շահումյանի անվան քաղաքական լուսավորության ռեսպուբլիկական տուն

---

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

---

Ինդեքս՝ 77704

**Отдел идеологической работы ЦК КП Армении**

**АГИТАТОРИ БЛОКНОТ**

**№ 13**

**1963**

*ՎՖ 08063* *Պատվեր 555* *Տիրաժ 8035*

---

*Հանձնված է արտադրության 28/VI 1963 թ.*
*Ստորագրված է տպագրության 5/VII 1963 թ.*

---

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

**Գինը 8 կոպ.**